Ի ՀԱՆԴԻՍԻ ԲԱՑՄԱՆ

# ԱՄԵՆԱՓՐԿՉԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՂԱԼԱԹԻՈՅ

# ԽՕՍՔ

ՓԱՓԱԶԵԱՆ Ս. ԼԵՒՈՆՏԻՒ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՊԱՐՈՆԵԱՆ
— 1877 —

# Ի ՀԱՆԴԻՍԻ ԲԱՑՄԱՆ



# ԱՄԵՆԱՓՐԿՉԵԱՆ

# ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

## ՂԱԼԱԹԻՈՅ

## ԽՕՍՔ

ՓԱՓԱԶԵԱՆ Ս. ԷՖԷՆՏԻԻ




ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՊԱՐՈՆԵԱՆ
— 1877 —

## Ի ՅԱՆԴԻՍԻ ԲԱՑՄԱՆ

# ԱՄԵՆԱՓՐԿՉԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

## ՂԱԼԱԹԻՈՅ

# ԽՕՍՔ

## ՓԱՓԱԶԵԱՆ Ս· ԷՖԷՆՏԻԻ



Այս նորակառոյց վարժարանիս մէջ՝ որ յանուն Ամենափրկչի հաստատեալ է արդէն, աւաջին անգամ աստուածային սրբազան երգոց և աղօթից ձայնն հնչուելէ ետև, Հարք իմ և Տեարք, ինձ արժան է խօսք առնուլ և փառք տալ Աստուծոյ, նախ՝ անոր համար որ ինչպէս նորա աջն ու հովանին հայցելով օրհնեցաւ հիմնարկութիւն վարժարանիս, նոյնպէս և անվնաս և ամենայն յաջողութեամբ հասցնելով զմեզ շինուածոյս աւարտմանը, այսօր մի և նոյն աստուածային հզօր աջն ու հովանին խնդրելու արժանի ըրաւ զմեզ՝ վասն ապագայ բարգաւաճանաց մեծի հիմնարկութեանս յօգուտ և ի պայծառութիւն Հայոց ազգի։

Փառք կուտամ երկրորդ անոր համար որ զիս արժանի ըրաւ այս փառաւոր աւուր հասնելու. որուն համար տասն և վեց տարիէ ի վեր

անդուլ տքնութիւնք և անձնուէր աշխատութիւնք ունեցած եմ։ Ուստի և այսօր իմ նպատակիս հասած ըլլալով, կը պարտաւորիմ Ղալաթիոյ Սուրբ Լուսաւորիչ եկեղեցւոյս մէջ ունեցած ծառայութեանցս մէկ խիստ համառօտ համարատուութիւնն ընել. համարատուութիւն մը, որ միշտ ազգային վարչութեան մատուցուած և նորա հաւանութեանն արժանացած է, բայց ցարդ ժողովրդեան ներկայացուած չէ, ոչ ուղղակի և ոչ անուղղակի. հակառակ իսկ այնքան հրապարակային նախատանաց և անուանարկութեանց, որք մանաւանդ վերջին չորս տարուան մէջ՝ անընդհատ տեղացին իմ վրայ։ Կսպասէի այս աւուր, որ անոնց ամենուն սա կարճ և գործնական պատասխանը տամ, «ահա իմ գործերս՝ ո՛ւր են ձերինները». և այս պատասխանը տամ այն օրը, յորում կարենամ ինքզինքս ազատ համարել սոյն պաշտօնավարութեան կապերէն։

Ղալաթիոյ մէջ ունեցած պաշտօնավարութիւնս երկու է, մին դպրոցական և միւսն՝ տնտեսական։

Դպրոցական պաշտօնավարութիւնս կսկսի 1861 մարտ 20 ին։ Յիշողները կրնան վկայել թէ այն ատեն Ղալաթիոյ վարժարանը՝ որն որ անցեալ տարի ամբողջապէս կալուածի վերածուեցաւ, փոքր սրահէ մը և 2 փոքր դասարաններէ կը բաղկանար. և հազիւ 26–27 աշակերտ ունէր, մեծ մասը բնիկ, փոքր մաս մը Բերացի և քանի մը գաւառացի։ Քիչ ատենի մէջ աշակերտաց թիւը 60–70 ի ելաւ, մեծ մասամբ գաւառացի

ըլլալով. մանաւանդ Հիւանդանոցի վարժարանէն դուրս Թօթափեալ յաջողակ ու անպաշտպան աշակերտաց ապաստարանն եղաւ։

Հարկ չէ այժմ մանրամասնութեան մտնել, ոչ ալ այն մեծամեծ դժուարութեանց և հակառակութեանց վրայ խօսիլ, որ ծագեցան իմ պաշտօնավարութեանս գրեթէ երկրորդ ամէն, սոյն վարժարանին աշակերտաց բազմանալուն, և ուսմանց կանոնաւոր ընդարձակմանը երեսէն։

Հետզհետէ աշակերտք կը բազմանային, պիտոյք կ'առաւելուին, և ինչ որ Հիւանդանոցի վարժարանին մէջ ինձ կէտ նպատակի դրած էի, ու անյաջող ելած, այն է գաւառացի մանկտոյն ուսում տալ և ինքնզինքն ուսուցիչներ հասցնել, զայն ի գլուխ հանելու միջոցներ ու դիւրութիւններ կը տեսնէի Ղալաթիոյ մէջ. ուր բնակիչք մեծաւ մասամբ գաւառացի եղբարք ըլլալով, իրենց զաւակներն ու երկրացի յաջողակ աշակերտներ բերելով՝ իրենց քով կրնան սնուցանել. որով անոնց մարմնաւոր հացին պիտոյքը հոգալու դժուարութենէն զերծ մնալով, միայն հոգեւոր հացին, մտաւոր սննդեան հոգը կը մնար Ղալաթիոյ վարժարանին վրայ։ — Եւ արդարեւ այս կերպով Ղալաթիոյ վարժարանիս մէջ ցարդ բազմաթիւ գաւառացի աշակերտներ դաստիարակուած են. յորոնցմէ քանի մը հարիւրը յականէ յանուանէ կրնամ յիշատակել, որոնց մէկ մասը թէ Պօլսոյ և թէ այլ և այլ գաւառաց մէջ ուսուցչութեան պաշտօն կը վարեն, մէկ մասն ալ արքունի Բժշկութեան և Անտառաբանութեան վար-

ժառանները մտած, նոյնպէս և Հեռագրատան և այլ զբաղմանց պարապած են· և այսօր անոնց մէջ նշանաւոր անձինք կան, որ կը փայլին Ազգին ու ընկերութեան մէջ· ասոնց մանրամասնութիւնն ալ հարկ չէ այժմ ընել։ —

Բայց այս նպատակն յառաջ և ի գլուխ տանելու համար պէտք կային 1°. Եկամուտ և 2°. Վարժարանին ընդարձակման· երկուքն ալ իմ ձեռնհասութենէս վեր էին· վասն զի ես էի սոսկ ուսուցիչ մը, վարժարանին բովանդակ հոգը բարձած, և միանգամայն աղքատ գաւառացի աշակերտաց մարմնաւոր պարէնին համար ալ մուրացիկ մը։

Ուրեմն կը մնար ինձ այդ երկու պիտոյից ճար մ՚ընել։ 1863 ին կոչուեցայ Ուսումնական խորհրդոյ պաշտօնավարութեան· կարծեցի թէ նոյն պաշտօնական միջոցաւը պիտի կրնամ յաջողիլ նպատակիս մէջ, զոր իմ պատուարժան պաշտօնակիցքս ալ Ազգին օգտակար ճանչցան և հաստատեցին, և ամենայն ջանք ի գործ դրին զայն ի գլուխ հանելու, բայց չի յաջողեցան· ինչպէս կը տեսնուի նոյն խորհրդոյ համարատուութեան տեղեկագրէն, որոյ մէկ քաղուածը քիչ մը ետքը պիտի ներկայացնեմ։

1865 ին Ղալաթիոյ թաղական խորհրդոյ պաշտօնավարութեան կոչուեցայ· որպէս զի ինչ որ ուսուցչութեամբ չէի կրնար ընել, և ինչ որ Ուսումնական խորհրդականութեամբ չի կրցայ ընել, զայն թաղականութեամբ յաջողիմ ընել։ Ահա իմ թաղական պաշտօնավարութեանս բուն պատճառը և յայդ յարատեւելուս ալ գաղտնիքը։

Այս պատճառն ու գաղտնիքը հաստատելու, և իմ տնտեսական պաշտօնավարութեանս մէկ համառօտ համարատուութիւնը Ձեզ ներկայացնելու համար, նախ արժան կը դատիմ 1871 Նոյեմբեր ամսոյ մէջ առ Ամեն. Խրիմեան Սրբազան Պատրիարքն և Ազգային վարչութիւնն մատուցած տեղեկագրէս հետևեալ մասերը քաղել:

“Ազգային վարչութեան Ուսումնական խորհրդոյ, որուն անդամակից ըլլալու պատիւն ունէի, ի վերջ ապրիլի 1865 ին հրատարակած Տեղեկագրին մէջ Ղալաթիոյ վարժարանը գաւառական ընելու համար ծրագիր մը կայ, որուն բուն խօսքերը մէջ կը բերեմ (երես 58-64)„:

“Ուսումնական խորհուրդն իր կազմութեան առաջին օրէն իրեն նպատակ դրած էր Պօլսոյ վարժարանաց վրայ հսկելու պաշտօնին հետ՝ գաւառաց վարժարանները չմոռնալ. և եթէ կարելի է՝ զանոնք աւելի խնամարկել և զարգացնել„:

“Ուստի Ուսումնական խորհուրդը երբ տակաւին նախապատրաստութեանց և խորհրդածութեան կը պարապէր, Ղալաթիոյ և Եէտիգուլէի Ս. Փրկչի վարժարանաց վրայ մասնաւոր խորհրդածութիւններ ունեցաւ: Առաջինը ցերեկային ըլլալով, իր տեղւոյն դրից և այլ հանգամանաց նկատմամբ պանդուխտ մանկտւոյն յարմար վարժարան մ'է, որ արդէն իսկ այնպէս է: Երկրորդը գիշերային ալ ըլլալով, և մանաւանդ Ազգին որբ և անտէրունչ մանկանց սեպհական, աւելի յարմարութիւն ունի Ազգին

պիտանի ծառայութիւն մատուցանելու, և այս ծառայութիւնը գաւառներու մէջ ամէն կողմ տարածելու»:

«Բայց ո՞րչափ մեծ եղաւ Խորհրդոյս ուրախութիւնը, երբ նոյն իսկ Քաղաքական Ժողովոյ կողմանէ 561-66 համար նամակաւ Ղալաթիոյ վարժարանը Գաւառական վարժարան ընելու և անոր յատակագիծը պատրաստելու առաջարկութիւնը ընդունեց»:

«Խորհուրդս յատակագիծը պատրաստեց իր Լ. նիստին մէջ, և ղրկեց Քաղաքական Ժողովոյ»:

«Յատակագծին մէջ վարժարանին արդի նիւթական շէնքը տեղ մը ընդունելու կէտ մը կար: Չէր կրնար Ուսումնական խորհուրդը նախատեսել թէ այս կէտը բոլոր խնդիրը պիտի դժուարացընէր, և թէ սանկ առաջարկութեամբ մը մեծ սխալ մը գործած պիտի ըլլար»:

(Հոս տեղեկագիրը կը պատմէ թէ ի՞նչպէս ուշացեր է շինութեան խնդիրը)»:

«Վերջապէս Տնտեսական Խորհրդոյ կողմանէ՝ նոյն Խորհրդոյ անդամ Յովակիմեան Յովհաննէս աղան ներկայացաւ Խորհրդոյս որոշեալ օրը. և ի միասին Ղալաթիոյ վարժարանին այցելութիւն ընելով մանրամասն հետազօտութեամբ քննելով տեսնուեցաւ որ շէնքին ընդարձակութիւնը անհրաժեշտ պէտք է. և ասիկա ալ աւելի թեթև ծախքով մը գոցելու համար սրահի մը շինութիւնը բաւական է, որ կրնայ 18-20 հազար ղուրուշով աւարտիլ: Յովհաննէս աղան յետոյ յարեց թէ թէպէտ Ղալաթիոյ վարժարանը իբրև

կեդրոնական Գաւառական վարժարան՝ ընդարձակելու համար պէտք է որ կեդրոնական սընտուկէն նպաստ ընդունի, բայց կեդրոնական սնտուկը այս օգնութիւնն ընել չը կրնար։ Խորհուրդս պատասխանեց թէ Ղալաթիոյ վարժարանը կեդրոնական սնտուկէն ակնկալութեան պէտք մը չունի. և ոչ ալ Թաղական սնտուկը այդչափ ծախքն ընելու դժուարութիւն մ'ունի„։

"Խորհրդածութիւններէ վերջը շատ մը տեղեկագիր պատրաստելով Խորհուրդս կընքեց, և Յովակիմեան Յովհաննէս աղան ալ զայն ստորագրեց իբրև անդամ Տնտեսական խորհրդոյ, և խրկուեցաւ առ Քաղաքական Ժողովն„։

"Ասոր պատասխանը ուշանալով, Խորհուրդս դարձեալ գիր գրեց առ Քաղաքական Ժողովն, խնդրելով որ այս կարևոր խնդրոյն վախճան մը տայ„։

"Ասոր ալ պատասխանը ուշանալով, դարձեալ գիր խրկուեցաւ առ Քաղաքական Ժողովն, միանգամայն առ Տնտեսական Խորհուրդն„։

"Վերջապէս Ուսումնական Խորհուրդը մեծ ցաւով սրտի տեսնելով այս խնդրոյն յապաղումը՝ և նիւթական շէնքի խնդրովը այսքան պարապ ժամանակ կորսուիլը, փութաց ԽԲ. Նիստին մէջ Ղալաթիոյ վարժարանին բարոյական շէնքը չուշացնել, և զանազան գաւառներէ տղայ բերելու որոշումը, որ Լ. Նիստին մէջ եղած է, գործադրել„։

(Տեղեկագիրը կը պատմէ այդ որոշման վերաբերեալներն ալ, որք անգործադրելի մնացած են։)

"Ահաւասիկ կեդրոնին մտածութիւնը" ։

"Բայց այս մտածութիւնը և կարգադրութիւնը տեսական մասն էր · գործնականը Ղալաթիոյ Թաղ. խորհրդին ձեռքն էր, որ վերոյիշեալ անցից միջոցին՝ առանց ականջ դնելու Ազգ. վարչութեան տնօրէնութեանց, ձեռնարկած էր վարժարանի դասատուներէն մէկ քանին փոփոխելու և աշակերտները արձըկելու, այն միջոցին Քաղ. ժողովոյ խմբովին հրաժարած ըլլալէն օգուտ քաղել ուզելով ։ Յիշեալ վարժարանը դար ու մար եղած էր, եթէ Ուսում. խորհուրդը կանգուն չըլլար, և Սրբազան Պատրիարքն ալ հետևեալ նամակաւ չարգիլեր Թաղ. խորհրդոյ դիտաւորութիւնը" ։

Համար 671=91

"Մեծապատիւ Ատենապետ ·

"Ցեղւոյդ Ամենափրկչի վարժարանը՝ ուր արդէն խիստ մեծագոյն մասամբ պանդուխտ աշակերտներ կը դաստիարակուին, ասկէ առաջ Ազգին աւելի պիտանի և օգտակար ծառայութեան մը յատկացնելու համար, Քաղ. ժողովով որոշուած է ԳԱՒԱՌԱԿԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ մ'ընելու, և ամեն կերպով պանդուխտ տղայոց կրթութեանը նուիրելով զայդ, Հայաստանի լուսաւորութեանը գործածելու" ։

"Տարակոյս չունիմ թէ այս որոշումը արդէն ձեզ ալ ծանօթ պիտի ըլլայ · ուստի հարկ կը համարինք ծանուցանել ձեզ, թէ այժմէն նոր փոփոխութիւններու պէտք մը չիկայ, ուղղա-

տալէ փոփոխութեան և ոչ ուղղելոյ առջևման․ այլ ինչ վի-
ճակի մէջ է նէ՝ այնպէս պէտք է մնայ, մինչև որ Քաղ․ Ժողովոյ որոշմանը համեմատ ըլլալիք կարգադրութիւնը խորհրդոյդ հաղորդուի, և ան ատեն վարժարանիդ բարեկարգութեանը համար պէտք եղածը տնօրինուի»։

Ողջ լերուք

Կնիք
**ՊՕՂՈՍ ՊԱՏՐԻԱՐՔ**
Կ․ ՊՈԼՍՈՅ

7 Յուլիս 1864
ի Պատրիարքարանի
Հայոց Կ․ Պոլիս

«Այս նամակն ալ իր ներգործութիւնը քիչ ատենէն կորոյս․ և Թաղ․ խորհուրդն աւելի հընարամիտ՝ հետևեալ նամակը խրկեց Սրբազան Պատրիարք Հօր, երբ Նորընտիր Քաղ․ Ժողովը կը գումարէր»։

«Ամենապատիւ Սրբազան Հայր

«Անցեալները Թաղիս Դպրոցին բարեկարգութեանը և յառաջադիմութեանը մասին, քանի մը փոփոխութիւններ խորհուրդս որոշեր և Հոգաբարձութեան պատուիրեր էր ընելու․ նոյն միջոցին Ձեր Սրբազնութենէն խորհուրդս նամակ մը ընդունեց, որով տեղեկացանք թէ Ուսում․ խորհրդոյ կողմանէ առ Քաղ․ Ժողովը առաջարկութիւն մը եղած է տեղւոյս դպրոցը Գաւառական Դպրոց ըլլալու, և Քաղ․ Ժողովէն ընդունուեր և նոր փոփոխութիւն չընելով իր վիճակին մէջ թողուլ պատուիրեր էիք, մինչև որ Քաղ․ Ժողովոյ կողմանէ հրահանգ տրուի․ ինչ-

պէս որ Խորհուրդս ալ Ձեր հրամանին համեմատ վարուելով ամենափոքր փոփոխութիւն մը անգամ չէ ըրած . և նոյն միջոցին Քաղ. Ժողովը իւր հրաժարականը տուեր , և դեռ նոր Ժողովը չէր ընտրուած . բայց Ժողովի կազմութիւնը եղաւ և մինչեւ ցայսօր կ'սպասեմք և դեռ հրահանգ մը կամ լուր մը չեմք ստացած : Ուստի Ազգին օգտին ծառայելով հարկ կը համարիմք ծանուցանել որ տեղւոյս դպրոցին միևնոյն վիճակի մէջ մնալը անհնարին է . վասն զի դպրոցիս իւր այժմեան եկամուտը ծախքին չի բաւեր , տղայոց տուած ամսականին տարեկան եկամուտն է 5-6 հազար ղուրուշ , և տարեկան ծախքն է քսասուն հազար ղուրուշէն աւելի , որ եկեղեցւոյս սնտուկէն կը հատուցուի , և մնացածը միշտ բաց մնէ , և դպրոցին դասատուաց ամսականին հատուցմանը համար Խորհրդոյս գանձապետը շատ դըժուարութիւն կը քաշէ , և այսօր վեց հազար ղուրուշէն աւելի դասատուներուն պարտք կայ , որ երկու ամիս է չէ վճարուած և միշտ գանգատ կ'ընեն Խորհրդոյս" :

"Ուստի կ'աղաչեմք Սրբազնութենէդ որ ժամ յառաջ դպրոցիս համար Քաղ. Ժողովոյ կողմանէ ըլլալիք որոշումը մեզ յայտնելու շնորհ ընէք . կամ թէ կրկին մեզ յանձնէք որ ժամ յառաջ դպրոցիս վիճակը բարեկարգելու և տնօրինելու ձեռնամուխ ըլլամք և ապագայ դժուարութեանց առաջքը առնեմք" :

Մնամք եւայլն . ԴԻՒԱՆ ԹԵՂ. ԽՈՐՀՐԴՈՅ

13 Օգոստ. 1864, Ղալաթիա :

«Ահա կեդրոնին մտածութեան դէմ ճիւղի մը մտածութիւնները»։

«Նիւթական խնդրոյն առջեւ ամեն բան կանգ կ'առնէ։ Ուսումն. խորհուրդը ամեն ոյժ և ճիգ թափեց հասկցնելու թէ այն տեղեկութիւնները սխալ են, և հազիւ կարաց անոր ազդեցութիւնը բառնալ, և Ղալաթիոյ վարժարանին ծրագիրը իւր տեղեկագրին մէջ դրաւ, այն յուսով թէ Երեսփ. ժողովը քննութեան կ'առնու և այս կենսական խնդրոյն ուղղութիւն կ'ընէ»։

«Ահա կեդրոնին բոլոր ըրածը»։

«Իսկ ես այս դարձուածքներուն առջև՝ 1865 մայիս 1 ին հրաժեշտ տալով կեդրոնին մէջ պաշտօնավարութենէ, սկսայ ճիւղին մէջ պաշտօնավարելու, այն է Թաղական խորհրդականութեան»։

«Ահա իմ Թաղ. խորհրդոյ պաշտօնավարութեանս բոլոր գաղտնիքը.

«1° Այժմ Ղալաթիոյ վարժարանին շէնքը ուզուածէն աւելի ընդարձակուած է, որ այն ատեն Ուսումն. խորհրդոյ երկար բանակցութենէն վերջը անյաջող մնացած էր.

2° 40,000 ղուրուշ ծախք կ'երթար ըստ վերոյիշեալ Թաղ. խորհրդոյ նամակին, (թէեւ պաշտօնական վիճակագրութիւնը որ Ուսումն. խորհուրդն ըրած էր 36000 ի հազիւ կը հանէ,) այժմ 54000 ղուրուշ. 6000 ղուրուշ աշակերտաց թոշակն ալ այժմ բարձուած ըլլալով, ըսել է այժմ 20000 և ճիշդն ըսելով 24000 ղուրուշ աւելի տարեկան ծախք կ'երթայ, և դասատուաց դարձ մ՚ էր .

“3°. Այժմ ամսական 3000 ղուրուշի մօտ եկամուտ աւելցած է Եկեղեցւոյն, և այս պատճառաւ եղած ծախուց մասին պարտք մնացած չէ, ինչպէս որ անցեալները. Տնտես. Խորհուրդն իր քննութեամբը հաստատեց.

“4°. Վարժարանին պատճառաւ Եկեղեցին զրկուած չէ, Եկեղեցւոյ մէջ. մեծածախ նորոգութիւններ եղած են, և բարեզարդութենէ ալ բնաւ չէ զրկուած.

“5°. Այսօր ամսական 3000 ղուրուշ եկամուտ բերող նոր կալուած մ'ալ շինուելու վրայ է, որ ինչպէս յայտնի է, 4-5 տարիէն իր շինութեան ծախքը հանելով նոր առաւելութիւն մ'ալ կունենայ„:

“Ահաւասիկ գործնական պատասխանը Թաղ. Խորհրդոյն վերոյիշեալ նամակին, որուն հանելուկը լուծելը կեդր. վարչութեան ձեռնհասութենէն վեր էր, մանաւանդ այնպիսի անկերպարան վիճակի մէջ„:

“Հիմա ժամանակն հասած կը կարծեմ վախճան տալ մասնաւոր ջանից, զոր Ազգային Վարչութեան վերջին հնգամեայ անկերպարան վիճակին մէջ հարկ էր 'ի գործ դնել. մասնաւոր ջանքերը ժամանակի մը համար են և որ եւ է բարենորոգական գործոյ մը յարատեւութեանը չեն երաշխաւորեր: Ինձ տաղտկալի է այդ Թաղականութեան պաշտաման մէջ յարատեւել, և յիշեալ վարժարանին ըստ ամենայնի պատասխանատու մնալ. Թերեւս օր մը վարժապետութիւնն ալ չի կրնամ վարել, և թերեւս վաղը մեռնիմ. ուստի ժամանակն է որ

կեդրոնական վարչութիւնը, որ այժմ իր օրինաւոր ընթացքին մէջն է, ձեռք առնու այս խնդիրը և ապահովէ ու արդիւնաւորէ զայն. և թոյլ չիտայ որ անկերպարան վիճակներու մէջ այնչափ աշխատութեամբ յառաջ եկած գործ մը խանգարի և տակնուվրայ ըլլայ. գործը իմս չէ, այդպիսի սնափառութիւն հեռի յինէն, Պօղոս տնկեաց, Ապօղոս ջուր ետ, և Աստուած աճեցոյց»։

«Հարկաւ ինէ շատ աղէկ կը մտածէ Ամենապատիւ Սրբազնութիւնդ և Ազգային վարչութիւնդ գաւառացւոց վիճակէն և անոնց դաստիարակութեան ամենահարկաւորութեանը վրայ։ Գաւառաց գիւղօրէից մէջ մանկավարժներ պէտք են, գրել, կարդալ, և հաշուել ուսուցանող, կրօնի և Ազգութեան վրայ բարի զգացումներ սփռող։ Այդ մանկավարժները գետնէն չեն կրնար բուսնիլ. կեդրոնական վարչութիւնը այսօր 6000 ղշ. ամսականով ապահովեալ, իր դիրքովը Թաղական հանգամանքէ զուրկ՝ ուղղակի կեդրոնին մասնաւոր հսկողութեանը կարօտ վարժարան մը կ'ունենայ իր ձեռքին տակ պատրաստ, 3-4 տարիէն 9000 ղրշ. ամսականաւ, և ան ատեն թերեւս աղքատ աշակերտաց նիւթական նպաստ մ'ալ կարենայ ընել»։

Ասոնք են այն կարեւոր մասերը, զորս 1871 ի տեղեկագրէս քաղելով ձեզ ներկայացուցի այսօր, որոնց վրայ բացատրութիւն տալու հարկ չի կայ, կարծեմ։ Միայն թէ ձեր միտքը չի շփո-

թելու համար բացատրել կը պարտաւորիմ թէ, այն քաղաքական ժողովը՝ որ Ղալաթիոյ վարժարանը Գաւառական կեդրոնական վարժարան ընել որոշեց, չէ՛ այն՝ որ Ուսումնական խորհրդոյ այս մասին դրած թախանձալից գրերուն իսկ հազիւ կը պատասխանէր կամ ոչ։ Երկու քաղաքական ժողովոց օրով պաշտօն վարած է մեր Ուսումնական խորհուրդը, և առաջնոյն ատենապետն էր վսեմ. Ստեփան փաշա Ասլանեան. այս ազգասէր անձը խորհուրդ տուած էր քաղաքական ժողովոյ թէ, գաւառացի մանկըտւոյն ուսում տալու և անոնցմէ ուսուցիչ հասցընելու համար՝ Ղալաթիոյ մէջ Գաւառական կեդրոնական վարժարան մը ունենալու է Ազգը։

Ցեսաք ակներեւ թէ ինչ որ ուսումնական խորհրդականութիւնն իր բոլոր ազդեցութեամբը չկրցաւ ընել, թաղական խորհրդականութիւնն ըրաւ զայն, ընդարձակելով վարժարանը և նպաստաւորելով եկամուտը աւելցուց։

Պարտ կը համարիմ յայտնել նաև թէ, այս ամենը առանձինն իմ աշխատութեանս արդիւնքը չե՛ն ու չեն կրնար ըլլալ։ Ուստի այս փառաւոր աւուր մէջ պարտիմ յիշատակել այն անձինքը, որք ազգասիրաբար աշխատեցան Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին այժմեան վիճակին բերել հասցնելու. և են՝ Զմշկածագցի Մուրատեան երկու եղբարք Մ. Աւետիս և Մ. Փիլիպոս էֆէնտիները, Բենկացի Մեծատուրեան Պետրոս էֆէնտին, Արմաշեցի Ալիքսանեան Մարտիրոս էֆէնտին, Սեբաստացի Լուսահոգի Բարունակ

Տէմիրճեան, Ղալաթիացի լուսահոգի Յարութիւն Մորլեան, Բերացի լուսահոգի Մկրտիչ Միրասեէտեան, Ղալաթիացի Սերոբեան Եփրեմ էֆէնտին, և մասնաւորապէս կը յիշատակեմ Ղալաթիացի Մելիքեան Թագւոր էֆէնտին, որ ըսկիզբէն մինչև ցարդ ինծի գործակից գտնուած է, և [illegible] ըստ նախկին ընկերներուն նախապաշարումը թօթափելով, ամէն ջանք ի գործ դրած է այս ամէն շինութեանց։

Հիմա ձեր աջակցութիւնն ինչպէս մոռանամ, պանդուխտ ժողովուրդ, և չյիշատակեմ. ձեր ամէնուն յայտնի և լռելեայն օգնութիւնն՝ 16 տարուան աշխատութեանցս տոմարին մէջ մեծ տեղ մը բռնած է։ Ազգիս համար աշխատեցայ, և մասնաւորաբար գաւառացի մանկտւոյն իբրև ճշմարիտ Հայ դաստիարակութեանը պարապեցայ. արդարև շատ նեղութիւնք և չարչարանք հասան ինծի, բայց անուամբ Տեառն համբերեցի անոնց, և ձեր սիրոյն ու օժանդակութեամբն յաղթեցի անոնց։

Դառնանք մեր խնդրոյն։ Գիտեմ կուզէք այժմ գիտնալ թէ 1871 ին երբ Խորիմեան սրբազան կը պատրիարքէր, երբ Սահմանադրական վարչութիւն կիշխէր, ինչ օգնութիւն տեսայ արդեօք այս ձեռնարկութեանց կատարելագործութեանը համար։ Հաւատացէք երբ ըսեմ թէ տեղեկագրիս պատասխան անգամ չստացայ։

Ուստի վերստին իմ աշխատութիւններս շարունակեցի.

Նոր ընդարձակուած վարժարանը, որ 120

աշակերտ կրնար հանգիստ պարունակել, սկսաւ նեղ գալ. վասն զի աշակերտաց թիւը հետզհետէ 170-180 ի կը բարձրանար. ոչ միայն գաւառացի աշակերտներով, այլեւ պօլսեցիներով կը լեցուէր. Բերայէն, Պէշիկթաշէն, Օրթագիւղէն, Իւսկիւտարէն, Վոսփորի երկու եզերաց այլ և այլ գիւղերէն, Գալաթէն, Թօփգափուէն, Գումգափուէն, մինչեւ Սամաթիայէն աշակերտներ կը դիմէին ուսման փափաքով. և պարտաւորած էինք անոնց մեծ մասը մերժել. վասն զի տեղ չունէինք:

Այն ատեն նոր խորհուրդ ծնաւ. Ղալաթիան իր դիրքովը ոչ միայն գաւառացի պատանեաց, այլեւ պօլսեցւոց ալ օգտակար ընել: խորհուեցաւ վարժարանը երկուքի վերածել, Նախակրթարանի և Ուսումնարանի. Նախակըրթարանին մէջ դաստիարակել թաղիս բնիկ և գաւառացի մանկտին. իսկ Ուսումնարանին մէջ՝ ոչ միայն նոյն Նախակրթարանին ընթացքն աւարտող պատանիք. այլեւ Պօլսոյ թաղային վարժարանաց մէջ Նախակրթական ընթացքնին կանոնաւորապէս աւարտող պատանիք ալ. այս Ուսումնարանին ուսմանց ծրագիրն ալ ընդարձակելով, զայն ազգային դաստիարակներ պատրաստող վարժապետանոցի վերածել:

Այսպիսի ընդարձակ նպատակի մը համար ընդարձակ շէնք և ընդարձակ եկամուտ կը հարկաւորէին:

1872 ին Ազգային վարչութեան քաղաքական ժողովոյ պաշտօնավարութեան կոչուելով, կը յուսայի թերեւս աւելի դիւրութիւն ունենալ

առաջադրեալ մեծ նպատակին հասնելու. բայց չի յաջողեցայ. վասն զի դրեթէ ամէն բան կըր-ցայ ձեռք բերել, Ուսումնական խորհրդոյ և Քաղաքական ժողովոյ հաճութիւն, շինութեան համար դրամի աղբիւր. բայց այս անգամ ալ բան մը պակսեցաւ, այն է, այս ամենը գոր-ծադրելու նախագահական կամքը։

Համոզուեցայ որ կեդրոնին մէջ գործել չըլ-լեմ անհնարին՝ գէթ դժուարին է. կեդրոնը հրամայելու և հսկելու իշխանութիւն մ'ըլլալով, թա-ղը նախ ամէն բան պատրաստելու և ապա կեդրոնին հրամանքին դիմելու է. Ծառայք գործելու, և կեդրոնն այն գործին վրայ հսկելու է։

Մինչ այս մինչ այն, և ահա՛ Ղալաթիոյ մեծ հրդեհը պատահեցաւ 1874 թուականին. այրե-ցան քանի մը մեծ կալուածներ, որոնք ապա-հովեալ ըլլալով, ապահովութեան տունէն (սի-կուրթա) ստացանք 1300 ի մօտ Օսմանեան ոսկի. վարժարանն ալ ապահովեալ էր, բայց չայրե-ցաւ, և միայն եղած Վնասուց փոխարէնն ստա-ցանք, որ վերոյիշեալ գումարին մէջն է։

Հարկ էր այրած կալուածներն նորոգ կա-ռուցանել. բայց ըստ որում նոյն կալուածոց հո-ղէն բաւական տեղ փողոցին թողուլ կը ստիպ-ուէինք, միւս կողմէն այդ կալուածները աւելի ընդարձակ և վայելուչ շինելու խորհուրդը կար, պատրաստուորեցանք վարժարանին այն մասը՝ որ բուն հին վարժարանն էր, ամբողջ քակել և խառնել կալուածոց շինութեան. և կ'ըսէի ինք-նիրենս. Կա՛մ Քօլլէժին վարժարան ըլլալը ունենայ Ըստը՝

ի բաց առեալ այն սրահը որ հին վարժարանին վրայ յաւելեալ մասն էր, « և կա՛մ մեծ ու հոյակապ վարժարան մը պէտք ունենայ », որ արդէն առաջադրեալ է։

Աստուած յաջողեց մեզ. և Նախորդ վարչութեան որոշմամբ, և կամօք և հաճութեամբ ամենապատիւ Տ. Ներսէս սրբազան Պատրիարքի սոյն հոյակապ վարժարանը շինուեցաւ, որոյ բացման հանդէսը կը կատարենք այսօր։ Ձեր զաւակները որ աստ կը դաստիարակուին, 2 տարիէ ի վեր ամենամեծ նեղութիւն կրեցին եկեղեցւոյ պահարանաց և նեղ սրահի մը ու ամենափոքր սենեակներու մէջ իրենց ուսմանը պարապելով. բայց այսօր ազատած են այդ վիճակէն։ Նախկին վարժարանին սրահն ալ պիտի յատկանայ Աղջկանց վարժարանի. կը տեսնէք սա աղջիկները, որ աստ համախմբեալ են, քիչ մը ետքը պիտի առաջնորդուին իրենց սրահը։ Պալաթիա ի սկզբանէ հետէ Աղջկանց վարժարան չէր ունեցած. բայց այսօր երբ 25–30 աղջկունք պատրաստ կը գտնուին վարժարանի կարօտ, կարելի՞ բան է որ զրկուին այդ շնորհքէն։ Կը խնդրեմ Աստուծմէ որ այս ընդարձակ վարժարանն ալ, որ 500 աշակերտ կրնայ պարունակել, օր մը դարձեալ նեղ գայ, և ուրիշ վարժարանի տեղ ալ պատրաստուի։

Գիտեմ որ հետաքրքիր էք իմանալ թէ ինչ ծախք գացած է այս հոյակապ շինութեան. կարճ պատասխանեմ. իւրաքանչիւր կանգունին 3 Օսմ. ոսկի. կամ 600 այսքան կանգուն տարածութեան համար 1867 ոսկի. մինչդեռ կանգու-

նը 4 ոսկւոյ ծախք հաշուեալ էր ։ Այս գումարին 1542 ոսկին փոխառութեամբ և 325 ոսկին կալուածոց հասութով վճարեալ է ։

Զայս գիտնալէ ետև, կ'ուզէք անշուշտ գիտնալ թէ ինչ է կալուածոց սնտուկին այժմեան վիճակը ։ Նախ պէտք է գիտնալ թէ 1866 դեկտեմբերի վերջ՝ ըստ տոմարին՝ սնտուկը պարտք ունէր 900 ոսկի և 37000 ղրուշ տարեկան հասոյթ կալուածական ։ Մինչև 1874 թուականի մեծ հրդեհը՝ հետզհետէ կալուածներ շինուեցան, մէկ կողմէն ալ եղած պարտքը վճարուեցաւ. որով 1874 ին սնտուկն ունէր 1000 ոսկի պարտք և 114000 ղշ. տարեկան հասոյթ կալուածական. 1866 ի հասոյթէն 77000 ղրուշի առաւելութիւն, 100 ոսկւոյ պարտուց առաւելութեամբ ։

Հրդեհէն յետոյ նոր կալուածները շինուեցան. և այս անգամ կալուածոց տարեկան հասոյթը 150-160000 ղրուշի բարձրացաւ, 1866 ի հասութին քառապատիկն և աւելի. կամ լիրայի հաշուով գրեթէ 1200 ոսկի. պանդոկն ի միասին հաշուելով ։

Իսկ պարտք մնաց այժմ

| | | |
|---|---|---|
| 1000 | ոսկի | հինէն |
| 1045 | „ | նոր կալուածոց շինութեան |
| 190 | „ | Էնֆիէճիի կէտիկին գնման |
| 1542 | „ | Վարժարանին շինութեան համար |
| 3777 | | |

ընդ ամենը երեք հազար եօթ հարիւր եօ֊

թանատուն և եօթը ոսկի պարտք կայ այժմ։ Եթէ հաշուեցոյցը հրատարակուի, ան ատեն աւելի յստակ կը տեսնէք այդ թուանշաններուն քանակութիւնը։

Պարտուց այս վիճակն անկարող կ'ընէ ընկերութիւնն այլ ևս նոր պարտք ընելու. և որդի կալուածոց գրեթէ 2/3 ը յատկացած ըլլալով պարտուց մայր դրամին և տոկոսին վճարման, մնացորդով միայն հոգացուի վարժարանիս պէտքը։

Որչափ որ մնացորդ հասոյթը չի բաւէր մեր բաղձացած ընդարձակ վարժարանն այժմէն ունենալու. սակայն ձեր ամենուդ օժանդակութիւնը, և մանաւանդ ընդհանուր Ազգին օգնութիւնն ու յօժարութիւնը երբ հասնի, այդ ընդարձակ վարժարանն ալ այժմէն կրնանք ունենալ։

Մեր Թաղային վարժարանն այժմ շէնքիս երրորդ յարկին մէջ պիտի տեղաւորի, որ արդէն նոյն նպատակաւ շինուած է. իսկ չորրորդ յարկը տակաւին խնդրոյ տակ է թէ, արդեօք Պատրիարքարա՞ն թէ կեդրոնական Ուսումնարան ընել պէտք է։ Սակայն կը յուսամ որ դաստիարակութեան այս նոր խոչընդոտը կը վերցուի ճշմարիտ ազգասիրաց շնորհիւ. մանաւանդ թէ այս խնդիրն արդէն Երեսփոխանական ժողովոյ դիւանին վրայ է և օրակարգն անցած. զոր այս վիճակին մէջ կը ցանկային տեսնել 1863 էն ի վեր կազմեալ Ուսումնական խորհուրդք. և Աստուած ա՛յս աւուր պահած է եղեր, ա՛յս աւուր. վասն զի Երեսփոխանական ժողովն այսօր այդ խնդրոյն

վրայ կրնայ վիճիլ և արդիւնաւոր որոշում մը տալ. մինչդեռ առանց այս աւուր վիճակին՝ ինչ կրնար ընել. երբ կեդրոնական սնտուկն ցայսօր՝ և Թեքելս այսպէս՝ երթայ յաւիտեան անկարող պիտի մնայ դաստիարակութեան համար թանգ մ՚իսկ վճարելու ։

Մի՛ շփոթիք, երբ կը լսէք թէ այս շէնքը կամ անոր մէկ կարեւոր մասը ուրիշ պէտքի գործածելու մտադրութիւն կայ. չեմ յուսար թէ պիտի տեսնէք այնպիսի ձեռք մը, որ կարենայ փակել այս վարժարանին դուռները, կամ սեղմել և փոքրկացնել անոր ընդարձակութիւնն ու շքեղութիւնը, անարժան դատելով այսպիսի շինուածք մը վարժարանի յատկացնելը ։ Նման ատանկ գիշերային խորհուրդներ ըլլալ, բայց չեն կրնար ի լոյս գալ ։

Իմ պարտաւորութիւնս կամ լաւ եւս՝ առաջադրութիւնս մինչեւ այս կէտն էր, պաշտպանել վարժարանին շէնքն ու կալուածները ։ Հասայ Նպատակիս, և աւարտեցաւ Գալաթիոյ պաշտօնավարութեանս սահմանը ։ Այսուհետեւ չեմ կրնար շարունակել այս պաշտօնը, ինչպէս որ շարունակեցի ցարդ ։

Գիտեմ պիտի ըսէք թէ պարտքն ալ տալու է, որպէս զի շուտով սկսի վարժապետանոցի ընթացքը. կը վստահացնեմ զձեզ որ պարտքն ալ կը տրուի, վարժապետանոցի ընթացքն ալ կը սկսի, երբ այժմ դաստիարակութեան խնդիրն Երեսփոխանութեան ժողովին մէջ սկիզբն առնու ։

Գիտեմ պիտի ըսէք թէ, մօտէն հսկելու պէտքն ալ կայ, որպէս զի անխոհեմ և անփորձ

տնտեսներու ձեռօք այս վարժարանն ալ չփճանայ ։ կը ճանչեմ այդ պէտքը․ սակայն այսուհետեւ միայն իմ պարտաւորութիւնս չէ այդ , և չի կրնար ըլլալ ։ Դուք որ ծնող էք և զաւակ ունիք տաս , և սիրող էք յառաջադիմութեան Ազգին , դուք , որ ցարդ գործակից էիք ինձ , այժմ պէտք է որ դուք գործին տէր կանգնիք , և հրակէք , ես ալ ձեզ գործակից կ'ըլլամ ։

Ես ոչ թէ իմ ապրուստս ընդարձակելու համար այս աշխատութիւնները տուի , ինչպէս կը համբաւեն նախանձորդքս , այլ Ազգին ծառայելու համար ։ 1861 մարտ 20 ին այս վարժարանին մէջ հազար ղուրուշ ( հազար ղուրուշ և ոչ թէ 10 ոսկի) ամսականով եկած եմ, և մինչեւ ցարդ միեւնոյն գումարն առած եմ ։ Միթէ կարելի՞ էր ինձ այդ գումարով բաւականանալ , եթէ ընտանեկան պիտոյից բեռը բոլորովին իմ վրայ ծանրացած ըլլար , և իմ գրական աշխատութիւններս և ուրիշ դասախօսութիւններս ալ երբեմն ինձ չօժանդակէին ․ այսու ամենայնիւ գիտցողները գիտեն թէ ինչ նիւթական անձկութեան մէջ գտնուած եմ և կը գտնուիմ ցարդ , բայց բնաւ ամսականիս յաւելման խնդիր մտքէս իսկ չեմ անցուցած ։

Չէի խոնարհեր մինչեւ այս բացատրութիւնները տալու , եթէ նախանձորդքս համբաւած չըլլային թէ փափազեան Ղալաթիա մը կ'ուտէ ։ կը հրաւիրեմ իմ անուանարկիչներս որ գան և քննեն Եկեղեցւոյս տումարները , և այլ ամենայն աշխատութիւններս ․ եթէ իմ ամսականէս

ղատ ուրիշ դրամ ինծի անցած կայ, ինչ անունով ալ ըլլայ, կամ ուրիշ տեսակ շահ մը ինծի մնացած, թող աշխարհի հռչակեն. գան և տեսնեն թէ ո՞րչափ մեծ խնայողութիւն գործածուած է. և եթէ այնքան արթնութիւն և աշխատութիւն և խնայողութիւն չըլլային, միթէ կարելի՞ էր տեսնել Ղալաթիան իր այսօրուան վիճակին մէջ: Ես ցարդ համբերեցի ամեն նախատանաց, որ այսօր կարենամ բանալ բերանս: Անոնք որ բաղդախնդիր են, անոնք որ Ազգին գործերուն մէջ անձնական շահ միայն կը փնտռեն, անոնք որ Ազգին ծառայութեանը մէջ Ազգին դըրամները անխղճօրէն և շռայլաբար վատնել սովորած են, անոնք են որ կը դատեն հաւատարիմ աշխատողները, կ՚անուանարկեն, կը բամբասեն. և եթէ ցարդ ինքզինքս անոնց դէմ հըրապարակի վրայ չէի պաշտպաներ, պատճառն այն էր, որ այս աւուր հասնիլ մտադրեր էի. ասկէ ետքը զայդ ալ պիտի ընեմ. այսու ամենայնիւ ցարդ պաշտօնական ամեն գիրքի մէջ ինքզինքս միշտ պաշտպանած եմ, և մինչեւ իսկ այդ գիրքերին մէջ թշնամիներս ալ խոստովանած են իմ աշխատութիւններս և աննենգ մատակարարութիւնս:

Կ՚ըսեն եղեր ոմանք թէ Ղալաթիոյ գիրքեր ու տեղն է որ այդ արդիւնքները կը բերէ. շատ լաւ, բայց Ղալաթիա այսօր կ՚ունենայ այս փառաւոր վարժարանը և այս կալուածները: Մի մոռնանք նաև 1864ին Ղալաթիոյ թաղ. խորհըրդին առ Ս. Պատրիարքն գրած նամակին այն

մասը թէ “սնտուկը միշտ բաց ունի„ ։ Օրինակ մ'ալ, ահա Բերա, որոյ եկեղեցւոյն հողերը Ղալաթիոյ եկեղեցւոյն հողերէն աւելի արդիւնաբեր են. ինչու համար 10-13 հազար ոսկւոյ պարտուց ներքեւ ընկճուեցաւ, եւ ցարդ կը հեծէ. եւ հազիւ սրտի մտօք եւ խղճով աշխատող անձ մ'ալ անդ կը ջանայ այսօր՝ Բերայի այդ պարտքը ջնջելու։

Լաւ տնտեսութիւնն եւ անձնուէր ու յարատեւ' աշխատութիւնը, մանաւանդ Ազգին ծառայութե՛ան ն'ընծայող անոնք որոնք միայն կարող են մեր եկեղեցիները պայծառացնելու, մեր վարժարանները յառաջադէմ զարգացնելու, եւ այլ ամենայն հաստատութիւնները բարեզարգելու, եւ Ազգին օգտակար ընելու։

Պատանեկան հասակէս Ազգիս ծառայելու համար սէր ու եռանդ կ'արծարծէր սրտիս մէջ։ 16 տարի յառաջ Ղալաթիոյ Ամենափրկչեան վարժարանիս մէջ դաստիարակութեան պաշտօն ըստացայ. եւ տեսայ որ Ղալաթիոյ դիրքն յարմար է գաւառացի եղբարց օգնելու, եւ անոնց լուսաւորութեանը համար հոգւով եւ սրտով ճշմարիտ հայ դաստիարակներ պատրաստող վարժարան մ'ունենալու սատ. ձեռն արկի այս աշխատութեան. եւ հետզհետէ Ս. Եկեղեցւոյս կալուածներուն ու վարժարանը ընդարձակուելով այս աւուր վիճակին հասան։ Փառք կ'ուտամ Աստուծոյ, եւ կ'ապաւինիմ Անոր, որ քննող է զաղտնեաց սրտի, Նա անշուշտ կը վարձատրէ՛ բարիները եւ կը պատժէ՛ չարերը։

Այս հոգեւոր մխիթարութեան հետ մարմնաւոր մխիթարութիւն ալ ունիմ. եթէ 2 են թշնամիքս, 2000 են բարեկամքս. դուք որ այսօր աստ համախմբած էք, արդէն իմ բարեկամներէս էք. բարեկամ էք ոչ թէ անձիս, այլ գործերուս. ինչպէս նաև թշնամիքս ալ թշնամի՛ են գործերուս. վասն զի կ'ուզեն որ իրենց չկրցածը կամ չըրածը ուրիշը, մանաւանդ իրենց հակակարծիք գտնուող փափաքեանը չընէ։ Բայց մինչև ցարդ անկարող մնացին իրենց թըշնամական ամեն հնարից մէջ, և չկրցան արգելուլ զիս այս փառաւոր աւուր հասնելէ։ Եթէ յարատեւութիւն սիրող չըլլայի, եթէ վհատիլ, որդողիլ և վախնալ գիտնայի, անշուշտ կէս ճամբան կը մնայի, և թերեւս սկսիլ անգամ չկրնայի։

Պատմութիւնը պիտի գնահատէ անշուշտ իմ ազգային աշխատութիւններս, և մասնաւորաբար Ղալաթիոյ մէջ ունեցած ծառայութիւններս։

Գերեզմանիս վրայ ձայն մը երբ սա երեք բառերն արտասանէ, փափազեան ծառայեց Ազգին, ոսկերոտիս պիտի հրճուի գերեզմանիս մէջ, և հոգիս յաւիտենականութեան մէջ։

**Մ. Գ. Գ. ՓԱՓԱԶԵԱՆ**

**14 փետր. 1877։**



